Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 7 ԱՊՐԻԼ 1951

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս՝ 2—52—78։*



# ԱՊՐՈՒՄ ԵՎ ՀԱՂԹԱՆԱԿՈՒՄ ԵՆ ԼԵՆԻՆԻԶՄԻ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԸ

(Վ. Ի. Լենինի ծննդյան 81-րդ տարեդարձի առթիվ)

*81 տարի առաջ, 1870 թվականի ապրիլի 22-ին (ն. տ.) Սիմբիրսկ (Ուլյանովսկ) քաղաքում ծնվեց բոլշևիկյան պարտիայի և Սովետական պետության հիմնադիր, ամբողջ աշխարհի աշխատավորների մեծ ուսուցիչ, առաջնորդ և բարեկամ, կոմունիզմի հանճար Վլադիմիր Իլյիչ Լենինը։ «Լենինը ծնված էր ռևոլյուցիայի համար։ Նա իսկապես ռևոլյուցիոն պայթումների հանճարն էր և ռևոլյուցիոն ղեկավարման մեծագույն վարպետը»,— ասել է Ի. Վ. Ստալինը։*

*Վ. Ի. Լենինը մեր դարաշրջանի հանճարեղ ռևոլյուցիոն գործիչն էր, գիտության մեծ կորիֆեյը, Մարքսի և Էնգելսի գործի շարունակողն ու զարգացնողը։*

«Ես չգիտեմ մի ուրիշ ռևոլյուցիոներ,— ասել է Ի. Վ. Ստալինը,— որն այնպես խորը հավատար պրոլետարիատի ստեղծագործական ուժերին և նրա դասակարգային բնազդի ռևոլյուցիոն նպատակահարմարությանը, ինչպես Լենինը։ Ես չգիտեմ մի ուրիշ ռևոլյուցիոներ, որը կարողանար այնպես անխնա խարազանել «ռևոլյուցիայի քաոսի» և «մասսաների ինքնագլուխ գործողությունների վակխանալիայի» ինքնագոհ քննադատներին, ինչպես Լենինը»։

Վ. Ի. Լենինի անունը հայտնի է երկրագնդի բոլոր մասերում ապրող, բոլոր լեզուներով խոսող և իրենց ազատության ու անկախության համար պայքարող ժողովուրդներին։ Վ. Ի. Լենինը իր մեջ հիանալի կերպով մարմնավորել էր «այն ամենը, ինչ պրոլետարիատի մեջ իսկապես մեծ է և հերոսական,— անվեհեր միտքը, երկաթե, անընկճելի, համառ, ամեն ինչ հաղթահարող կամքը, սրբազան ատելությունը, մահու չափ ատելությունը ստրկության և ճնշման նկատմամբ, լեռներ շարժող ռևոլյուցիոն կիրքը, մասսաների ստեղծարար ուժի նկատմամբ անսահման հավատը, կազմակերպական հսկայական հանճարը»,— այսպես է ասված



Լենինի մահվան առթիվ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի՝ պարտիային ուղղված դիմումի մեջ։

Վ. Ի. Լենինի անունը դարձել է աշխարհի ժողովուրդների ազատության դրոշը՝ արևմուտքից մինչև արևելք, հարավից մինչև հյուսիս։

***

Վ. Ի. Լենինը իր ռևոլյուցիոն գործունեության առաջին քայլերից ձեռնամուխ եղավ Ռուսաստանում մարքսիստական պարտիայի ստեղծմանը։ Վ. Ի. Լենինը մարդկային հասարակության վերափոխման մարքսիստական ծրագիրը իրականացնելու համար իր բոլոր ուժերը և կյանքը նվիրաբերեց նոր տիպի պարտիայի, բանվոր դասակարգի առաջավոր, գիտակից, կազմակերպված ջոկատի ստեղծմանը, լենինիզմի պարտիայի ստեղծմանը։ «Տվեք մեզ ռևոլյուցիոներների կազմակերպություն և մենք շուռ կտանք Ռուսաստանը»,— ասաց Վ. Ի. Լենինը մեր դարի սկզբի օրերին։ Հենց այդ կազմակերպության ստեղծմանն էլ նվիրեց իր ամբողջ կյանքը պրոլետարական ռևոլյուցիայի մեծ հանճարն ու ստրատեգը՝ Վ. Ի. Լենինը։ Բոլշևիկյան պարտիայի

հիմնադրի և առաջնորդի հիասքանչ կերպարը բացառիկ խորաթափանցությամբ բնորոշել է Լենինի հավատարիմ զինակից, նրա գործի հանճարեղ շարունակող և զարգացնող ընկեր Ստալինը։ «90-ական թվականների վերջից,— ասում է ընկեր Ստալինը,— և մանավանդ 1901 թվականից հետո, «Իսկրա»-ի հրատարակումից հետո, Լենինի ռևոլուցիոն գործունեության հետ իմ ունեցած ծանոթությունն ինձ այն համոզման բերեց, որ մենք հանձին Լենինի արտասովոր մի մարդ ունենք։ Նա այն ժամանակ իմ աչքում պարտիայի հասարակ մի ղեկավար չէր, նա պարտիայի փաստական ստեղծողն էր, որովհետև մենակ նա էր, որ հասկանում էր մեր պարտիայի ներքին էությունը և անհետաձգելի կարիքները»։

Ընկեր Ստալինի բնորոշմամբ Վ. Ի. Լենինը բարձրագույն տիպի ղեկավար էր, լեռնային արծիվ, որը պայքարի մեջ երկյուղ ասած բանը չգիտեր և պարտիան համարձակորեն առաջ էր տանում ռուսական ռևոլուցիոն շարժման անծանոթ ուղիներով։

Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը ստեղծեցին մարքսիստական նոր տիպի պարտիան, բոլշևիկյան պարտիան, որը դարձավ բանվոր



դասակարգի ավանգարդը, մեր բոլոր հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողը, մեր դարաշրջանի «խիղճը, միտքը և ուղեղը»։ Բոլշևիկների մեծագույն պարտիան իր ամբողջ հերոսական գործունեության ընթացքում, պատմական բոլոր փոթորիկների և պատմական ուղու զիգզագների մեջ ղեկավարվել է և ղեկավարվում է մարքսիզմի-լենինիզմի հզոր զենքով։ Կառուցելով մարքսիստական ռևոլուցիոն պարտիան, բոլշևիկյան պարտիան, Լենինը և Ստալինը նրան զինել են ռևոլուցիոն ծրագրով, մշակել են պարտիայի իդեոլոգիական, կազմակերպական, տակտիկական ու թեորիական հիմունքները։ Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը, գործելով պրոլետարիատի դասակարգային պայքարի նոր պայմաններում, իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլուցիաների դարաշրջանում, ստեղծագործորեն զարգացրին մարքսիստական թեորիան, հարստացրին այն նոր դարաշրջանին համապատասխան նոր դրույթներով, առաջ մղեցին միջազգային պրոլետարական ռևոլուցիոն շարժման զարգացումը, կազմակերպեցին և իրականացրին պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակը մեր երկրում։

Լենինի-Ստալինի պարտիան Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի կազմակերպիչն ու ոգեշնչողն է։

Մարդկությանը մատուցած Լենինի մեծագույն ծառայություններից մեկը բանվորների և գյուղացիների առաջին սոցիալիստական պետության ստեղծումն է։ Մարքսը և Էնգելսը առաջինը ստեղծեցին գիտական կոմունիզմի թեորիան, գիտականորեն ապացուցեցին, որ կապիտալիզմը հանդիսանում է պատմականորեն անցողիկ հասարակակարգ, ապացուցեցին բուրժուազիայի անկման և պրոլետարիատի կողմից իշխանության գրավման անխուսափելիությունը։ Մարքսը և Էնգելսը բանվոր դասակարգին սովորեցրին գիտակցել իր ուժերը, նրանք պրոլետարիատին տվեցին տեսական զենք՝ ռևոլյուցիոն թեորիան։

Մարքսի և Էնգելսի գործը նոր դարաշրջանի, իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիայի դարաշրջանի պայմաններում շարունակեցին Լենինը և Ստալինը։ Ընկեր Ստալինի կլասիկ բնորոշմամբ «Մարքսիզմը գիտություն է բնության և հասարակության զարգացման օրենքների մասին, գիտություն



ճնշված և շահագործվող մասսաների ռևոլյուցիայի մասին, գիտություն բոլոր երկրներում սոցիալիզմի հաղթանակի մասին, գիտություն կոմունիստական հասարակության կառուցման մասին։ Մարքսիզմը որպես գիտություն չի կարող կանգնած մնալ միևնույն տեղում,— նա զարգանում է ու կատարելագործվում։ Իր զարգացման մեջ մարքսիզմը չի կարող չհարստանալ նոր փորձով, նոր գիտելիքներով,— հետևաբար, նրա առանձին ֆորմուլաները ու հետևությունները չեն կարող ժամանակի ընթացքում չփոխվել, չեն կարող չփոխարինվել պատմական նոր խնդիրներին համապատասխանող ֆորմուլաներով ու հետևություններով։ Մարքսիզմը բոլոր դարաշրջանների ու ժամանակաշրջանների համար պարտադիր, անփոփոխ հետևություններ ու ֆորմուլաներ չի ճանաչում։ Մարքսիզմը ամեն տեսակ դոգմատիզմի թշնամին է»։

Ամեն մի սոցիալական ռևոլյուցիայի ամենարմատական հարցը հանդիսանում է պետական իշխանության հարցը։ Վ. Ի. Լենինը հայտնագործեց սովետական իշխանության ձևը, որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձև, նոր տիպի պետություն, երբ իշխանությունը պատկանում է ոչ թե

փոքրամասնություն կազմող շահագործող դասակարգերին, այլ բնակչության մեծամասնությունը կազմող աշխատավոր մասսաներին։

Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը սովետական պետության մեծ ստեղծողներն են։ Լենինի հանճարով ստեղծված սովետական պետությունը անսասան կերպով դիմացավ քաղաքացիական կռիվների և օտարերկրյա ինտերվենցիայի, Սովետական Միության 1941—1945 թ. թ. Հայրենական Մեծ պատերազմի դաժան փորձություններին։



Վ. Ի. Լենինը մերկացրել է ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ, ավազակային քաղաքականությունը։ Ամերիկյան իմպերիալիստները, դեռևս 1917 թ. Հոկտեմբերյան ռևոլուցիայից առաջ սկսեցին ակտիվ միջամըտել ռուսական գործերին, նպատակ ունենալով խեղդել ռուսական ռևոլուցիան։ Սովետական իշխանության երդվյալ թշնամիներ ամերիկյան իմպերիալիստները գազանային ատելությամբ դիմավորեցին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլուցիան և 1917 թվականին հանդիսացան Սովետական Ռու-



սաստանի նկատմամբ սովի բլոկադայի նախաձեռնողները։ Ամերիկյան իմպերիալիստները 1918 թվականի սկզբներից ռազմական ինտերվենցիա սկսեցին մեր Հայրենիքի նկատմամբ, նպատակ ունենալով ոչնչացնել երիտասարդ սովետական ռեսպուբլիկան։ Ամերիկյան իմպերիալիստների ձեռքերը ներկված են Ռուսաստանի աշխատավորների արյունով։ Սովետական ժողովուրդը երբեք չի մոռանա այն արյունալի ոճրագործությունները, որ կատարել են մեր երկրում ամերիկյան ինտերվենտները։

Վ. Ի. Լենինը, մերկացնելով ամերիկյան իմպերիալիստների նենգ պլանները, իր մի շարք ելույթներում ցույց է տվել, որ «Վիլսոնի իդեալականացված դեմոկրատական ռեսպուբլիկան գործնականում դուրս եկավ ամենակատաղի իմպերիալիզմի, թույլ և փոքր ժողովուրդների ամենաանամոթ ճնշման ու խեղդման ձև»։

Լենինը ամերիկյան իմպերիալիզմը նշավակել է որպես ռուսական ազատության դահճի ու խեղդողի, որպես Արևմտյան Եվրոպայի ժանդարմի։ «Պարզվեց,— ասել է Վ. Ի. Լենինը,— որ անգլիացիները և ամերիկացիները հանդես են գալիս որպես ռուսական ազատության դահիճներ ու ժանդարմ-

ներ, ինչպես այդ դերը կատարվում էր Ռուսաստանի դահիճ Նիկոլայ I-ի օրոք, ոչ ավելի վատ այն թագավորներից, որոնք դահիճների դեր էին կատարում և խեղդում էին հունգարական ռևոլյուցիան։ Այժմ այդ դերը ստանձնել են Վիլսոնի գործակալները։ Նրանք խեղդում են ռևոլյուցիան Ավստրիայում, նրանք ժանդարմների դեր են խաղում, նրանք ուլտիմատում են առաջադրում Շվեյցարիային. հաց չենք տա, եթե դուք պայքարի չբռնվեք բոլշևիկյան կառավարության դեմ։ Նրանք հայտարարում են Հոլանդիային՝ չհամարձակվեք ձեզ մոտ ընդունել սովետական դեսպաններին, հակառակ դեպքում բլոկադայի կենթարկվեք։ Նրանց զենքը պարզապես սովի թոկն է։ Ահա թե ինչով են նրանք խեղդում ժողովուրդներին»։

Լենինը սովորեցրել է, որ «անգլո-ամերիկյան իմպերիալիզմը նույնպիսի գազան է», ինչպիսին է գերմանական իմպերիալիզմը, որ «առավել ևս իրենց կթաղեն անգլիական և ամերիկյան իմպերիալիզմը, երբ նրանք կկատարեն այնպիսի ավանտյուրա, որը նրանց կհասցնի քաղաքական կրախի, երբ նրանք իրենց զորքերին կդատապարտեն ամբողջ Եվրոպայի խեղդողների ու ժանդարմների վիճակի»։



Ամերիկյան ժուռնալիստի հարցերին իր տված պատասխանի մեջ Լենինը ցույց է տվել ժողովուրդներին սպանդի մղող իմպերիալիստական սիստեմի տապալման անխուսափելիությունը։ «Ընդհանրապես տեխնիկայի, մասնավորապես հաղորդակցության ճանապարհների վիթխարի առաջադիմությունը,—ասել է իր պատասխանում Լենինը, — կապիտալի և բանկերի վիթխարի աճը արեցին այն, որ կապիտալիզմը հասունացել և գերհասունացել է։ Նա վերապրել է իրեն։ Նա դարձել է մարդկության զարգացման ամենառեակցիոն արգելակը։ Նա հանգել է ժողովուրդներին սպանդի մղող մի բուռն միլիարդատերերի ու միլիոնատերերի ամենակալ իշխանությանը... կապիտալիզմի կրախը անխուսափելի է... կապիտալիստները, բուրժուազիան կարող են իրենց համար «լավագույն» դեպքում ձգձգել սոցիալիզմի հաղթանակն այս կամ այն առանձին երկրում, ևս հարյուր հազարավոր բանվորների ու գյուղացիների բնաջնջման գնով։ Բայց նրանք չեն կարող կապիտալիզմը փրկել»։

Վ. Ի. Լենինի խոսքերը խիստ նախազգուշացում են ԱՄՆ-ի ներկայիս կառավարող շրջանների չափը կորցրած քաղաքական խե-

լագարների համար, որոնք անտեսելով պատմության դասերը նոր, համաշխարհային պատերազմ են նախապատրաստում։

Լենինը հայտնագործեց իմպերիալիզմի դարաշրջանում կապիտալիզմի տնտեսական-քաղաքական զարգացման անհամաչափության օրենքը, որը հանգեցրեց մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության լենինյան հանճարեղ ուսմունքին։ Նշելով դեպի սոցիալիզմ շարժվելու ուղին, Վ. Ի. Լենինը ամբողջ սրությամբ դնում էր մեր երկրի սոցիալիստական ինդուստրացման խնդիրը, նախազգուշացնում էր, որ առանց ինդուստրացման մենք կկործանվենք, որպես ինքնուրույն երկիր։ Լենինյան ստրատեգիան հետապնդում էր՝ բանվոր դասակարգի ձեռքում պահելով ղեկավարությունը գյուղացիության նկատմամբ, ապահովել խոշոր ինդուստրիայի վերականգնումն ու զարգացումը, էլեկտրիֆիկացման պլանի կիրառումը և այդ հիման վրա իրագործել մանր գյուղացիական տնտեսության սոցիալիստական վերափոխումը։ «Երբ Ռուսաստանը ծածկվի էլեկտրական կայանների և տեխնիկական հզոր սարքավորումների խիտ ցանցով, ապա մեր կոմունիստական տնտեսական շինարարությունը օրի-



նակ կդառնա ապագա սոցիալիստական Եվրոպայի և Ասիայի համար»,— կանխագուշակում էր Լենինը։

Լենինիզմի թշնամիների դեմ մղած պայքարում ընկեր Ստալինը պաշտպանեց և զարգացրեց մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության թեորիան, կոնկրետացրեց սոցիալիզմի կառուցման լենինյան ստրատեգիական պլանը, որի մեկնակետն էր սոցիալիստական ինդուստրացման գաղափարը։

Սոցիալիզմի կառուցումը մեր երկրում լենինիզմի ամենահաղթ գաղափարների կենդանի մարմնացումն է։ «Լենինիզմն,—ասում է ընկեր Ստալինը,— իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիայի դարաշրջանի մարքսիզմն է։ Ավելի ճշգրիտ՝ լենինիզմը պրոլետարական ռևոլյուցիայի թեորիան ու տակտիկան է ընդհանրապես, պրոլետարիատի դիկտատուրայի թեորիան ու տակտիկան՝ առանձնապես»։

Լենինիզմը միջազգային նշանակություն, ինտերնացիոնալ բնույթ ունի։ Լենինիզմը՝ հզոր լուսարձակի պես լուսավորում է բոլոր երկրների աշխատավորների պայքարի ուղին։

*Լենինի գործի մեծ շարունակող ընկեր Ստալինի ղեկավարությամբ ՍՍՌՄ-ը դարձել է աշխարհում ամենահզոր տերությունը, որի ուժն ու կենսունակությունը փայլուն կերպով դրսևորվեց Սովետական Միության 1941—1945 թ. թ. Հայրենական Մեծ պատերազմի տարիներին։*

*1924 թվականի հունվարի 21-ին դաժան մահը մեզնից խլեց մեր մեծ ուսուցչին և առաջնորդին՝ Վ. Ի. Լենինին։ Լենինի դրոշը, պարտիայի դրոշը բարձր բռնեց և առաջ տարավ ընկեր Ստալինը։ 1924 թվականի հունվարի 26-ին Սովետների Համամիութենական 2-րդ համագումարի սգո նիստում Լենինի դագաղի առջև պարտիայի անունից ընկեր Ստալինը պատմական Երդում տվեց.*

*«Մենք, կոմունիստներս, հատուկ կերտվածքի մարդիկ ենք։ Մենք հատուկ նյութից ենք կերտված։ Մենք նրանք ենք, ովքեր պրոլետարական մեծ ստրատեգի բանակը, ընկեր Լենինի բանակն ենք կազմում։ Չկա ավելի բարձր բան, քան այդ բանակին պատկանելու պատիվը։ Չկա ավելի բարձր բան, քան այն պարտիայի անդամի կոչումը, որի հիմնադիրն ու ղեկավարն ընկեր Լենինն է...։*

Հեռանալով մեզնից, ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց՝ բարձր պահել և մաքուր



պահպանել պարտիայի անդամի մեծ կոչումը: Երդվում ենք քեզ, ընկե՛ր Լենին, որ մենք պատվով կկատարենք քո այդ պատվիրանը...

Հեռանալով մեզնից, ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց՝ աչքի լույսի պես պահպանել մեր պարտիայի միասնությունը: Երդվում ենք քեզ, ընկե՛ր Լենին, որ մենք պատվով կկատարենք քո այդ պատվիրանը ևս...

Հեռանալով մեզնից, ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց՝ պահպանել ու ամրապնդել պրոլետարիատի դիկտատուրան: Երդվում ենք քեզ, ընկե՛ր Լենին, որ մենք չենք խնայի մեր ուժերը, որպեսզի պատվով կատարենք քո այդ պատվիրանը ևս...

Հեռանալով մեզնից, ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց՝ բոլոր ուժերով ամրապնդել բանվորների ու գյուղացիների դաշինքը: Երդվում ենք քեզ, ընկե՛ր Լենին, որ մենք պատվով կկատարենք քո այդ պատվիրանը ևս...:

*Ընկեր Լենինը մեզ անդադար ասում էր, թե անհրաժեշտ է, որ մեր երկրի ժողովուրդները կամավոր դաշինք ունենան, անհրաժեշտ է, որ նրանք եղբայրաբար համագործակցեն Ռեսպուբլիկաների Միության շրջանակներում։*

Հեռանալով մեզնից, ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց՝ ամրացնել ու ընդլայնել Ռեսպուբլիկաների Միությունը: Երդվում ենք քեզ, ընկե՛ր Լենին, որ մենք պատվով կկատարենք քո այդ պատվիրանը ևս...:

*Լենինը մեզ շատ անգամ է մատնանշել, որ Կարմիր Բանակի ամրացումը և նրա դրության լավացումը մեր պարտիայի կարևորագույն խնդիրներից մեկն է... Արդ երդվենք ընկերնե՛ր, որ մենք ուժերս չենք խնայի, որպեսզի ամրացնենք մեր Կարմիր Բանակը, մեր Կարմիր Նավատորմը...:*

Հեռանալով մեզնից, ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց՝ հավատարիմ մնալ կոմունիստական ինտերնացիոնալի սկզբունքներին: Երդվում ենք քեզ, ընկե՛ր Լենին, որ մենք մեր կյանքը չենք խնայի, որպեսզի ամրապնդենք ու ընդլայնենք ամբողջ աշխարհի աշխատավորների Միությունը՝ Կոմունիստական Ինտերնացիոնալը»:

*Բոլշևիկյան պարտիան հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ պատվով է կատարել ու կատարում պատմական այդ մեծ երդումը:*





*Վ. Ի. Լենինի ծննդյան 81-րդ տարեդարձը Սովետական ժողովուրդը դիմավորում է սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում ձեռք բերած խոշոր հաղթանակների պայմաններում: Հաջողությամբ կատարվել և գերակատարվել է հետպատերազմյան հնգամյա պլանը: Սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել կոմունիզմի մեծ կառուցումներին՝ Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի, Կույբիշևյան, Ստալինգրադյան, Կախովկայի հիդրոէլեկտրակայանների, Գլխավոր-Թուրքմենական, Հարավ-Ուկրաինական և Հյուսիս-Ղրիմյան ջրանցքների շինարարությանը: Սովետական ժողովուրդը, կառուցելով սոցիալիզմը, ձեռնամուխ է եղել կոմունիզմի կառուցմանը: Օր օրին ծաղկում և բարգավաճում են Սովետական հզոր Միության եղբայրական ռեսպուբլիկաները: «Մենք ունենք այժմ,— ասում է ընկեր Ստալինը,— միանգամայն կազմակերպված և բոլոր փորձություններին դիմացած բազմազգ սոցիալիստական պետություն, որի ամրությանը կարող էր նախանձել ամեն մի ազգային պետություն, աշխարհի ամեն մի մասում»:*

*Մեր Հայրենիքի ուժի և հզորության աղբյուրներից մեկը ՍՍՌՄ ժողովուրդների*

ստալինյան բարեկամությունն ու համագործակցությունն է։ «ՍՍՌՄ ժողովուրդների միջև բարեկամությունը,— ասում է ընկեր Ստալինը,— մեծ և լուրջ նվաճում է, որովհետև քանի այդ բարեկամությունը գոյություն ունի, մեր երկրի ժողովուրդները կլինեն ազատ և անպարտելի։ Ո՛չ ոք սարսափելի չէ մեզ համար— ո՛չ ներքին, ո՛չ արտաքին թշնամիները, քանի այդ բարեկամությունը ապրում է և բարգավաճում»։

Լենինիզմի ամենահաղթ ուժը դրսևորվում է ժողովուրդների բարեկամության մեջ։ Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության շնորհիվ սովետական ժողովուրդների մեծ ընտանիքում ծաղկել և բարգավաճել է նաև Սովետական Հայաստանը։ Վերջերս տեղի ունեցած Հայաստանի Կ(բ)Պ 15-րդ համագումարը հանրագումարի բերեց Սովետական Հայաստանի աշխատավորների ձեռք բերած նվաճումները և գործնական միջոցառումներ ընդունեց ժողովրդական տնտեսության, կուլտուրայի ու գիտության նոր վերելքի համար։

***

Վ. Ի. Լենինի գործը անմահ է։ Մարքսիզմ լենինիզմի գաղափարների մեծագույն հաղ-



թանակը ներկայումս դրսևորվում է նոր ուժով իմպերիալիզմի դեմ պրոգրեսիվ ուժերի կողմից տարվող նորանոր հաղթանակներով։ Լենինիզմը լուսավոր ջահ է հանդիսանում միջազգային պրոլետարիատի ու կոմունիստական շարժումների համար։ Լենինն ապրում է ամենուրեք։ Լենինիզմի պարտիայի հերոսական պատմությունը օրինակ է ծառայում կոմունիստական և բանվորական պարտիաների համար։ Չին ժողովրդի առաջնորդ Մաո Ցզե-դունը ասում է. «Մենք երախտապարտ ենք Մարքսին, Էնգելսին, Լենինին և Ստալինին, որոնք մեզ զենք տվեցին։ Այդ զենքը գնդացիր չէ, այլ մարքսիզմ-լենինիզմը... Սովետական Միության կոմունիստական պարտիան մեր լավագույն ուսուցիչն է, որից մենք պետք է սովորենք»։

Լենինիզմի գաղափարների խոշոր հաղթանակ են հանդիսանում մի շարք երկրներում ժողովրդական դեմոկրատիայի կարգերի հաստատումը, չինական ռևոլյուցիայի հաղթանակը, գերմանական դեմոկրատական Ռեսպուբլիկայի ստեղծումը, կոմունիստական շարժման աճը, գաղութային ժողովուրդների ազգային ազատագրական շարժումների բուռն աճը, խաղաղության համար միլիոնների կողմից ծավալված շարժումը։ Մարք-

կության պատմությունը չգիտե ոչ մի քաղաքական ուսմունք, որն այնքան արագ ու ծավալուն տարածվեր աշխարհի բոլոր մասերում և համակեր ժողովրդական լայն մասսաներին, ինչպես Լենինի-Ստալինի ուսմունքը, ռևոլյուցիոն մարքսիզմ-լենինիզմը։ Բավական է նշել, որ Լենինի և Ստալինի երկերը թարգմանված են աշխարհի բոլոր լեզուներով տասնյակ միլիոնավոր օրինակ տիրաժով։ Սովետական իշխանության տարիներին Մարքսի-Էնգելսի-Լենինի-Ստալինի երկերը ՍՍՌՄ-ում հրատարակվել են ավելի քան 800 միլիոն օրինակ տիրաժով։ Տարեցտարի ավելանում է մարքսիստական գրականության հրատարակությունը ժողովրդական դեմոկրատիայի երկրներում։

Վ. Ի. Լենինի անմահ աշխատությունները ոգեշնչում են կոմունիզմի գործի անպարտելիության մեծ հավատով։ Լենինիզմը լուսավորում է աշխատավոր մարդկության ճանապարհը։ Խաղաղության և դեմոկրատիայի համար մղվող պայքարում պրոգրեսիվ մարդկությանը հոկանի է մեծ Լենինի դրոշը, որը իր ձեռքում ամուր և անաղարտ է պահում մեծահանճար Ստալինը։

Մենք ապրում ենք այնպիսի դարում, երբ բոլոր ուղիները տանում են դեպի կոմունիզմ։



20-րդ դարը հանդիսանում է կոմունիզմի հաղթանակների դարաշրջան։ Սովետական ժողովուրդը Լենինի դրոշով, ընկեր Ստալինի առաջնորդությամբ կառուցում է կոմունիստական հասարակություն։ Կոմունիստական շինարարության հետագա հաղթանակների համար վճռական նշանակություն ունի Վ. Ի. Լենինի երկերի բազմակողմանի ուսումնասիրությունը։ Ընկեր Ստալինը ուսուցանում է մեր պարտիային, սովետական մարդկանց՝ ապրել և աշխատել, պայքարել ու հաղթել Լենինի պես, մշտապես հետևել Լենինի պատգամներին, հավատարիմ լինել լենինիզմին։

«Հիշեցե՛ք, սիրեցե՛ք, ուսումնասիրեցե՛ք Իլյիչին, մեր ուսուցչին մեր առաջնորդին»,— կոչ է անում ընկեր Ստալինը։

Լենինը ապրում է հանձինս լենինիզմի, հանձինս սովետական պետության, բոլշևիկյան պարտիայի։

Ապրում են և հաղթանակում լենինիզմի գաղափարները։

Ընկեր Ստալինը Լենինն է այսօր։

Ընկեր Ստալինի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը գնում է դեպի կոմունիզմ։



# ԽՈՐԸ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵԼ ԵՎ ՄԱՍՍԱՅԱԿԱՆԱՑՆԵԼ ՀԿ(Բ) Պ 15-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

*Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի 15-րդ համագումարում ընկ. Գր. Հարությունյանի տված հաշվետու զեկուցումը ընդգրկում է ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների գործունեության բոլոր բնագավառները և նշում է պարտիական, սովետական, պրոֆմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների առաջիկա խնդիրները։*

*ՀԿ(բ)Պ 15-րդ համագումարը ծավալուն որոշում ընդունեց ռեսպուբլիկայի արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի, գիտության, իդեոլոգիական աշխատանքի բնագավառներում պարտիական ու հասարակական կազմակերպությունների գործունեության բոլոր հարցերի վերաբերյալ։*

*Համագումարը Հայաստանի պարտիական կազմակերպությունների առջև խնդիր դրեց՝*



*մոբիլիզացնել ռեսպուբլիկայի աշխատավո-*
*րության ամբողջ ջանքերը կոմունիզմի կա-*
*ռուցման ստալինյան ծրագիրը պատվով կեն-*
*սագործելու, արդյունաբերության ու գյուղա-*
*տնտեսության հետագա զարգացման և աշ-*
*խատավորների նյութական բարեկեցությունն*
*ու կուլտուրական մակարդակը բարձրացնե-*
*լու համար։*

*ՀԿ(բ)Պ 15-րդ համագումարի նյութերը*
*աշխատավորության մեջ լայնորեն մասսա-*
*յականացնելու և պարզաբանելու համար*
*մեծ ու պատասխանատու խնդիր է դրվում*
*ինչպես պարտիական կազմակերպություննե-*
*րի, այնպես էլ բոլոր ագիտկոլեկտիվների և*
*ագիտատորների առջև։ Ագիտատորների*
*խնդիրն է՝ բացատրական լայն աշխատանք*
*ծավալել համագումարի նյութերի շուրջը,*
*ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր*
*ճյուղում աշխատող ամեն մի կոմունիստի,*
*կոմերիտականի և անպարտիական բոլշևիկի*
*սեփականությունը դարձնելով այդ որո-*
*շումները։ Ագիտատորները պետք է ձըգ-*
*տեն այն բանին, որպեսզի յուրա-*
*քանչյուր բանվոր, կոլխոզնիկ, ծառա-*
*յող ու ինտելիգենտ հասկանա, թե կոնկրետ*
*ի՞նչ է պահանջվում իրենից և ինչ պետք է*
*անի ինքը համագումարի որոշումների կեն-*

սագործման համար։ Ընդորում համագումարի որոշումների շուրջը կատարվող քաղաքական-բացատրական աշխատանքը չպետք է ժամանակավոր բնույթ կրի. այն պետք է ծավալել սիստեմատիկաբար, բազմակողմանի, գաղափարապես բարձր հագեցված և նպատակասլաց, կապելով տվյալ ձեռնարկության. կոլտնտեսության, հիմնարկի, ուսումնական հաստատության առջև կանգնած կոնկրետ խնդիրների հետ։

Հայաստանի Կ(բ)Պ 15-րդ համագումարը արդյունաբերական ձեռնարկությունների կազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ ամեն կերպ բարձրացնել արտադրության տեխնիկական կուլտուրան, արմատավորել նորագույն սարքավորումները, ապահովել արտադրության պրոցեսների հետագա մեխանիզացիան ու տեխնոլոգիայի կատարելագործումը, ինչպես նաև աշխատանքի արտադրողականության անշեղ աճն ու թողարկվող արտադրանքի որակի բարելավումը, սիստեմատիկաբար բարձրացնել արտադրության տեմպերն ու մակարդակը։

Համագումարի կողմից առաջադրված այս խնդիրները կատարելու համար խոշոր անելիքներ ունեն ագիտատորները, նրանք պետք է մոբիլիզացնեն աշխատավոր մասսաների



բոլոր ուժերը և Երևանի «Ավտոդետալ» գործարանի աշխատողների օրինակով լայնորեն ծավալեն սոցիալիստական մրցությունը՝ եղած ռեզերվների ու կարողությունների լրիվ օգտագործման համար, հումքի, էլեկտրաէներգիայի, վառելանյութի, օժանդակ նյութերի ու դրամական միջոցների ավելի մեծ խնայողության համար, որը կնպաստի առավելագույն չափով իջեցնելու ինքնարժեքը և կապահովի գերպլանային սոցիալիստական կուտակում ստեղծելու պարտավորության կատարումը։

Ագիտատորների խնդիրն է՝ լայն բացատրական աշխատանքի միջոցով մասսայականացնել առաջավորների աշխատանքի փորձն ու մեթոդները և օգնել, որպեսզի ընդունված պարտավորությունները կատարվեն ժամանակին։

Գյուղատնտեսության բնագավառում համագումարը Հայաստանի պարտիական կազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ բարձրացնել գյուղատնտեսության բոլոր կուլտուրաների բերքատվությունը, ընդարձակել հացահատիկային բույսերի ցանքատարածությունները այն հաշվով, որպեսզի առաջիկա տարիներին ռեսպուբլիկան ապահովվի սեփական հացի արտադրանքով և

բարձրացվի անասնաբուծության մթերատվությունը։

Գյուղատնտեսության բնագավառում ՀԿ(բ)Պ 15-րդ համագումարի կողմից առաջադրված խնդիրների լրիվ կենսագործումն ապահովող անհրաժեշտ պայմանն է հանդիսանում քաղաքական-մասսայական աշխատանքի լայն ծավալումը գյուղում, պայքարը գյուղատնտեսական արտելի օրինակելի Կանոնադրության անշեղ կենսագործման, կոլտնտեսություններում աշխատանքը ճիշտ կազմակերպելու, կոլեկտիվ տնտեսությունները տնտեսապես և կազմակերպչորեն ամրապնդելու համար։

ՀԿ(բ)Պ 15-րդ համագումարի նյութերը մասսայականացնելու ուղղությամբ օրինակելի աշխատանք են կատարում Սպիտակի, Նոր Բայազետի, Գորիսի ագիտատորները։ Սպիտակի շրջանի ավելի քան 400 ագիտատորներ կոլտնտեսություններում և արտադրական ձեռնարկություններում զրույցներ են անցկացնում՝ նվիրված համագումարի արդյունքներին։ Աշխատավորների մեջ համագումարի նյութերի մասսայականացումը զուգակցվում է նրանց կողմից սոցիալիստական նոր, բարձր պարտավորությունների ստանձնումով։



Ագիտատորների խնդիրն է՝ ամենօրյա քաղաքական-բացատրական աշխատանքի միջոցով մոբիլիզացնելու կոլխոզնիկների, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողների բոլոր ուժերը ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հետագա վերելքի կարևորագույն խնդիրը հաջողությամբ կատարելու համար։

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ տնտեսական ընդհանուր վերելքի համար անհրաժեշտ է, որպեսզի արտադրության նոր կազմակերպման փորձը դառնա մասսաների սեփականությունը։ Ուստի ագիտատորի առաջնակարգ խնդիրն է՝ ընդհանրացնել առաջավորների հարուստ փորձը, տեսնել այն նորը, լավը, առաջադիմականը, որ ծնվում է ժողովրդի ստեղծագործական նախաձեռնությամբ, կարողանալ իմաստավորել այդ նորը, և տարածել, մասսայականացնել, արմատավորել առաջավորների նվաճումները, սովորեցնել ու դաստիարակել աշխատավորական լայն մասսաներին այդ կոնկրետ օրինակներով։

Ագիտատորները արտադրության ու գյուղատնտեսության առաջավորների աշխատանքի փորձի մասսայականացումը կազմակերպելով, իրենց ուշադրությունը պետք է

կենտրոնացնեն այն ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, բրիգադաների, տեղամասերի վրա, որոնք հետ են մնում և չեն կատարում ստանձած պարտավորությունները: Քաղաքական-մասսայական աշխատանքի հմուտ կազմակերպումով հարկավոր է ապահովել, որպեսզի հետ մնացող բոլոր կոլեկտիվները հասնեն առաջավորների մակարդակին, կատարեն պլանները և ստանձնած պարտավորությունները:

Հայաստանի Կ(բ)Պ 15-րդ համագումարի որոշումները մեր ռեսպուբլիկայի աշխատավորական լայն մասսաների մեջ քաղաքական և աշխատանքային նոր վերելք են առաջացրել կոմունիզմի կառուցման ստալինյան հոյակապ պլանները կենսագործելու համար: Ագիտատորների խնդիրն է՝ հմտորեն օգտագործել բոլշևիկյան ագիտացիայի բոլոր ձևերը, ավելի լայն ծավալել սոցիալիստական մրցությունը, Հայաստանի Կ(բ)Պ 15-րդ համագումարի կողմից առաջադրված տնտեսական և քաղաքական խնդիրների կատարման շուրջը աշխատավորներին մոբիլիզացնելու համար:

Մ. ՔՈՉԱՐՅԱՆ



ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

Հայկական ՍՍՌ երրորդ գումարման Գերագույն Սովետի առաջին սեսիան քննության առավ և հաստատեց ռեսպուբլիկայի 1951 թ. պետական բյուջեն:

Ռեսպուբլիկայի 1951 թ. պետական բյուջեի հատկացումների և 1950 թ. պետական բյուջեի կատարման թվերը պարզ պատկերացնում են տալիս Սովետական Միության ժողովուրդների հարազատ ընտանիքում Սովետական Հայաստանի աշխատավորների ձեռք բերած մեծ նվաճումների մասին:

Հայկական ՍՍՌ նախորդ գումարման Գերագույն Սովետի ընտրություններից հետո ընկած ժամանակամիջոցում Հայաստանի աշխատավորները Լենինի—Ստալինի պարտիայի ղեկավարությամբ ձեռք են բերել նոր, խոշոր հաջողություններ:

Անսասանորեն ամրապնդվել է սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը: Կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկի փայլուն հաղթա-

նակները ՍՍՌՄ Գերագույն Սովետի, միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների տեղական և Գերագույն Սովետների ընտրություններում, այդ միասնության ամենապերճախոս ապացույցն են։

Սովետական Միությունը ընթանում է խաղաղության համար մարտնչողների ավանգարդում, նա սոցիալիզմի, դեմոկրատիայի և խաղաղության լագերի առաջատար ուժն է, նրա հուսալի պատվարը։

Վերջերս տեղի ունեցած ՍՍՌՄ Գերագույն Սովետի երկրորդ սեսիան Օրենք ընդունեց ՍՍՌՄ 1951 թ. Պետական բյուջեի մասին։

ՍՍՌՄ 1951 թ. Պետական բյուջեում զգալիորեն ավելացել են միութենական ռեսպուբլիկաների պետական բյուջեները, որոնց ընդհանուր ծավալը կազմում է ավելի քան 97 միլիարդ ռուբլի, ըստ որում 21 միլիարդ ռուբլի՝ ժողովրդական տնտեսության ծախսերի և 65 միլիարդ ռուբլի՝ սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորման համար։ Այս թվերը ցույց են տալիս միութենական ռեսպուբլիկաների ժողովրդական տնտեսության անշեղ աճը, աշխատավորության նյութական և կուլտուրական բարեկեցության հետագա վերելքը։

Միութենական ռեսպուբլիկաների բյուջե-



ների զգալի աճը բոլշևիկյան պարտիայի, սովետական կառավարության և անձամբ մեծ առաջնորդ ընկեր Ստալինի կողմից Սովետական Միության բոլոր ժողովուրդների նկատմամբ ցուցաբերած անսահման հոգատարության մի նոր, վառ վկայությունն է։

Սովետական Միության ժողովուրդների հարազատ ընտանիքում խոշոր հաջողություններ են ձեռք բերել նաև մեր ռեսպուբլիկայի աշխատավորները։ Հետպատերազմյան հնգամյակի տարիներին հուժկու վերելք ապրեցին ռեսպուբլիկայի արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը, է՛լ ավելի բարգավաճեցին ռեսպուբլիկայի գիտությունն ու կուլտուրան։ Անշեղորեն բարձրացավ աշխատավորների նյութական բարեկեցության մակարդակը։

1950 թ. ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության պլանի հաջող կատարմանը զուգընթաց հաջողությամբ կատարվել է նաև պետական բյուջեն։

Այսպես, 1950 թ. ռեսպուբլիկայի պետական բյուջեն կատարվել է եկամուտների գծով 1 միլիարդ 179,2 միլիոն ռուբլով, կամ 105,6 տոկոսով, իսկ ծախսերի գծով 1 միլիարդ 134,5 միլիոն ռուբլով, կամ 101,6 տոկոսով։ 1950 թ. բյուջետային տարին ռես-

պուբլիկան փակեց ծախսերի նկատմամբ եկամուտների 65 միլիոն 700 հազար ռուբլու գերազանցումով, ներառյալ նաև ազատ միջոցների մնացորդը։ Ռեսպուբլիկայի պետական բյուջեի եկամուտները հետպատերազմյան հնգամյակի տարիներին զգալիորեն աճեցին և 1945 թ. 668,9 միլիոն ռուբլուց 1950 թ. հասան 1 միլիարդ 179,2 միլիոն ռուբլու, իսկ ծախսերը համապատասխանորեն 668,1 միլիոն ռուբլուց հասան 1 միլիարդ 134,5 միլիոն ռուբլու։

Ռեսպուբլիկայի պետական բյուջեի ծախսումների այս հսկայական միջոցներով կառուցվեցին նոր արդյունաբերական ձեռնարկություններ, ոռոգիչ ջրանցքներ և էլեկտրակայաններ, բարեկարգվեցին ռեսպուբլիկայի քաղաքներն ու գյուղերը, կառուցվեցին բազմաթիվ դպրոցներ, ակումբներ, հիվանդանոցներ, կուլտուրայի հիմնարկներ։

1950 թ. ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման համար ծախսերը կազմեցին 323 միլիոն 916 հազար ռուբլի՝ 1945 թ. 158,1 միլիոն ռուբլու դիմաց, իսկ սոցիալ-կուլտուրական միջոցառումներինը 1950 թ. կազմեցին 707,5 միլիոն ռուբլի, կամ ամբողջ բյուջեի բոլոր ծախսերի 62,4 տոկոսը։ Սա ցույց է տալիս Սովետա-



կան Հայաստանի ժողովրդական տնտեսության բուռն զարգացումը, աշխատավորների նյութական բարեկեցության ու կուլտուրական բարգավաճման հարաճուն վերելքը։

Մեր Հայրենիքում ժողովրդական տնտեսությունը զարգանում է ընդլայնված սոցիալիստական վերարտադրության օրենքով։

1951 թ., ինչպես ամբողջ Սովետական Միությունում, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում պետք է ապահովվի նոր, է՛լ ավելի հուժկու վերելք, զգալի չափերով պետք է գերազանցվի 1950 թ. արտադրության մակարդակը, բարձրացվելու է աշխատանքի արտադրողականությունը, իջեցվելու է արտադրանքի ինքնարժեքը, էլ ավելի է բարձրանալու ռեսպուբլիկայի աշխատավորության նյութական և կուլտուրական բարեկեցությունը։

Հայկական ՍՍՌ պետական բյուջեն կազմված է ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման 1951 թ. պլանին համապատասխան և կոչված է ֆինանսական ռեսուրսներով ապահովելու սոցիալիստական էկոնոմիկայի հետագա աճը։

Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի կողմից հաստատված 1951 թ. բյուջեի ընդհա-

նուր ծավալը կազմում է եկամուտների գծով՝ 1 միլիարդ 158 միլիոն 862 հազար ռուբլի, ծախսերի գծով՝ 1 միլիարդ 158 միլիոն 827 հազար ռուբլի, ըստ որում 546,6 միլիոն ռուբլի հատկացվում է տեղական բյուջեներին։

Պետական բյուջեի ընդհանուր ծախսերի 90,7 տոկոսը, կամ 1 միլիարդ 50 միլիոն 300 հազար ռուբլի, հատկացվում է ժողովրդական տնտեսության զարգացման և սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորմանը, ընդորում այս տարվա բյուջեում ժողովրդական տնտեսության ֆինանսավորման ծախսերը, 1950 թ. նկատմամբ, ավելացել են 11,7 միլիոն ռուբլով և 1951 թ. կկազմեն 334,6 միլիոն ռուբլի, իսկ սոցիալ-կուլտուրական միջոցառումների հատկացումները անցյալ տարվա համեմատությամբ աճել են 8,1 միլիոն ռուբլով և 1951 թ. կկազմեն 715,7 միլիոն ռուբլի։

Մեր ռեսպուբլիկայում այս տարի լայն թափով շարունակվելու է կապիտալ շինարարությունը։ Կապիտալ ներդրումների գումարը կազմելու է ավելի քան 860 միլիոն ռուբլի։ Միայն կոմունալ-բնակարանային տնտեսության և քաղաքների ու շրջանային



կենտրոնների բարեկարգման համար հատկացումները կազմում են 65,9 միլիոն ռուբլի։ 1951 թ. ռեսպուբլիկայում պետական, կոոպերատիվ և անհատական շինարարության հետևանքով շահագործման կհանձնվի ավելի քան 169 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

Ժողովրդական լուսավորության համար հատկացումները պետական բյուջեում կազմում են 495,1 միլիոն ռուբլի։ Ռեսպուբլիկայի ուսումնական հաստատություններում սովորելու են 17 հազար ուսանող։ 1951 թ. նրանք ժողովրդական տնտեսությանը կտան 3.334 մասնագետ։ 1951 թ. ռեսպուբլիկայում գործելու են 1300 ակումբ և 1700 գրադարան։ Կուլտ-լուս հիմնարկների համար բյուջեում հատկացված է 24,6 միլիոն ռուբլի։

Առողջապահության միջոցառումների համար հատկացումները անցյալ տարվա համեմատությամբ աճել են ավելի քան 7 միլիոն ռուբլով և այս տարի կկազմեն 157,8 միլիոն ռուբլի։ Զգալիորեն ընդարձակվելու է բուժհիմնարկների ցանցը՝ ավելանալու է հիվանդանոցային մահճակալների թիվը, կառուցվելու են նոր ծննդատներ, մանկա-

մուրներ և այլն։ Սոցիալական ապահովու-
թյան համար հատկացումները 1951 թ. կը-
կազմեն 55,398 միլիոն ռուբլի։ Ֆիզկուլ-
տուրայի միջոցառումների ֆինանսավորմա-
նը հատկացված է 7 միլիոն 448 հազար
ռուբլի։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի առա-
ջին սեսիայում հանդես եկած դեպուտատնե-
րը միահամուռ կերպով հավանություն տվին
ռեսպուբլիկայի 1951 թ. պետական բյուջեին
նշելով, որ այն լիովին համապատասխանում
է Սովետական Հայաստանի աշխատավոր-
ների կենսական շահերին և արտահայտում
է նրանց նվիրական ցանկությունները։

Սովետական Հայաստանի 1951 թ. պե-
տական բյուջեն կոմունիզմի կառուցմանը
մասնակցող հայ ժողովրդի խաղաղ ստեղ-
ծագործ աշխատանքի բյուջե է։

Յուրաքանչյուր երկրի պետական բյուջեն
պարզ կերպով արտացոլում է նրա ներքին
և արտաքին քաղաքականությունը։

Մեր ռեսպուբլիկայի բյուջեն, հանդիսա-
նալով Սովետական Միության Պետական
բյուջեի մի բաղկացուցիչ մասը, լիովին ար-
տահայտում է նրա բնույթը, իսկ



ՍՍՌՄ Գերագույն Սովետի երկրորդ սեսիայի կողմից որպես Օրենք ընդունված ՍՍՌՄ 1951 թ. Պետական բյուջեն խաղաղության բյուջե է, աշխատավորական մասսաների բարեկեցության անշեղ բարձրացման բյուջե, կոմունիզմի կառուցման բյուջե։

Բոլորովին այլ պատկեր են ներկայացնում ԱՄՆ-ի և նրա կողմից գլխավորվող իմպերիալիստական ագրեսիվ բլոկի երկրների բյուջեները։ Նրանց բյուջեներում անընդհատ ուռճացվում են ռազմական ծախսերի բաժինները, էլ ավելի է ծանրացվում աշխատավոր մասսաների հարկային բեռը, կրճատվում ժողովրդական կրթության, առողջապահության, բնակարանային շինարարության ֆինանսական հատկացումները։ Սրա կողքին ամերիկա-անգլիական ագրեսիվ բլոկի երկրների ռեակցիոն կառավարությունները էլ ավելի են սանձազերծում սպառազինությունների կատաղի մրցավազքը, կիրառում ռազմական հիստերիայի և նոր պատերազմի սանձարձակ պրոպագանդայի քաղաքականություն։

Բյուջեներում ռազմական հատկացումների խելացնոր ուռճացումը ուղեկցվում է կապի-

տալի երկրների աշխատավորական մասսաների կենսամակարդակի կատաստրոֆիկ անկումով։ ԱՄՆ-ի և նրա արբանյակների բյուջեները նոր համաշխարհային պատերազմի հրահրման, ռեակցիայի և աղքատացման բյուջեներ են։

ԱՄՆ-ի և նրա՝ արբանյակների այս ռեակցիոն միջոցառումների ֆոնի վրա առանձնապես ցայտուն է արտացոլվում Սովետական Միության խաղաղության անշեղ քաղաքականությունը։

Սովետական Հայաստանի աշխատավորները քաջ գիտակցում են, որ իրենց անձնուրաց աշխատանքով նրանք ամրապնդում են մեր Հայրենիքի հզորությունը, որին որպես փրկության փարոսի ուղղված են աշխարհի միլիոնավոր մարդկանց հայացքները։

Ռեսպուբլիկայի 1951 թ. պետական բյուջեի հաջող կատարումը պետական կարևորություն ունեցող խնդիր է։

Կոմունիստական շինարարության մեծագույն խնդիրները պահանջում են համառ և ամենօրյա խնայողության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, բոլոր մի-



ջոցների և ուժերի մոբիլիզացում պետական պլանների կատարման և գերակատարման համար։

Յուրաքանչյուր բանվորի, կոլխոզնիկի, ծառայողի, ինտելիգենտի պատվի գործն է՝ լավագույն կերպով կատարել աշխատանքի իր բնագավառում առաջադրված խնդիրները։

Տարակույս չկա, որ մեր ռեսպուբլիկայի աշխատավորները 1951 թ. ընթացքում կատարելով պարտիայի և կառավարության որոշումները, կհասնեն նորանոր հաջողությունների արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության ու կուլտուրայի ասպարեզներում և մեր ռեսպուբլիկան կդարձնեն է՛լ ավելի ծաղկուն ու բարգավաճ։

Մ. ԹՈՒԹԽԱՅԱՆ



## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Սովետական հերոս ժողովուրդը, Լենինի—Ստալինի հաղթական պարտիայի ղեկավարությամբ, կապիտալիստական շրջապատի առկայության պայմաններում մեր երկրում հաջողությամբ ավարտեց սոցիալիզմի կառուցումն առանց օտար տերությունների ստրկացնող փոխառությունների և ներկայումս ձեռնամուխ է եղել կոմունիզմի կառուցմանը մեր երկրում։

Կապիտալիստական շնագայլերը, ինչպես Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից, այնպես էլ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, կարծում էին, որ Սովետական պետությունը չի կարողանա իր սեփական միջոցներով վերականգնել երկրի քայքայված ժողովրդական տնտեսությունը և ստիպված կլինի օգնություն խնդրել կապիտալիստական երկրներից և առաջին հերթին ԱՄՆ-ից, որը հնարավորություն կստեղծի ՍՍՌՄ-ն տնտեսա-



կան կախման մեջ դնել կապիտալիստական աշխարհից։

Բայց իմպերիալիստների ստոր հաշիվները չիրականացան։ Սովետական ժողովուրդը՝ բոլշևիկյան պարտիայի և հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինի գլխավորությամբ բացահայտեց ֆինանսական հսկայական միջոցներ՝ երկիրը սոցիալիզմի ուղիով տանելու և մինչպատերազմյան հնգամյակների ընթացքում ՍՍՌՄ-ն վերածելու հզոր ինդուստրիալ երկրի՝ ընդունակ պաշտպանելու իր երկրի ինքնուրույնությունն ու անկախությունը կապիտալիստների բոլոր ոտնձգություններից, ցուցաբերելով սովետական կարգի գերազանցությունը կապիտալիստականի նկատմամբ։

Սովետական մարդիկ հպարտանում են իրենց Հայրենիքի համաշխարհային պատմական հաղթանակներով, որոնք ձեռք են բերվել հետպատերազմյան ստալինյան հնգամյակի ընթացքում։

Մեր երկրի արդյունաբերական արտադրանքի աճը 1950 թ., 1940 թ. համեմատությամբ, կազմում է 73 տոկոս, պլանով նախատեսված 48 տոկոսի փոխարեն։ Իսկ 1950 թ. աճը, 1949 թ. նկատմամբ, կազմում է 23 տոկոս։

1950 թ. սոցիալիստական գյուղատնտեսությունը երկրին տվել է 7 միլիարդ 600 միլիոն փութ հացահատիկ, 300 միլիոն փըթով գերազանցելով 1940 թվականի մակարդակը:

Ազգային եկամուտը 1950 թ., 1940 թ. նըկատմամբ, աճել է 64 տոկոսով, պլանով նախատեսված 38 տոկոսի փոխարեն: Բացի դրանից, շնորհիվ գների հետևողական իջեցման, մեր աշխատավորության նյութական մակարդակը ևս մեծ չափերով գերազանցել է մինչպատերազմյան մակարդակը (միմիայն գների վերջին իջեցման հետևանքով ազգաբնակչությունը շահեց 34,5 միլիարդ ռուբլի: Այս և գների նախորդ իջեցումների հետևանքով ազգաբնակչությունը շահեց 301,5 միլիարդ ռուբլի):

Սովետական պետության քաղաքացիները աշխատանքային հերոսություն ցուցաբերելով մեր երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման, զարգացման և կոմունիզմի կառուցման գործում, միաժամանակ մեծ սիրով իրենց խնայողությունները փոխ են տալիս հարազատ պետությանը:

Հայրենական Մեծ պատերազմից առաջ մեր երկրի աշխատավորները սովետական պետությանը փոխ են տվել մոտ 50 մի-



լիարդ ռուբլի, որը խոշոր դեր խաղաց ստալինյան երեք հնգամյակների կատարման, մեր երկրում սոցիալիստական հասարակակարգի կառուցման գործում: Այսպես, ստալինյան հնգամյակների ընթացքում կառուցված յուրաքանչյուր արդյունաբերական երեք գիգանտից մեկը կառուցվել է աշխատավորությունից փոխառությամբ ստացված գումարների հաշվին:

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին մեր աշխատավորները փոխառությունների միջոցով երկրին տվեցին 76 միլիարդ ռուբլի, որը զգալիորեն նպաստեց հիտլերյան հորդաներին ջախջախելու գործին:

Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտումից հետո սովետական մարդիկ մեր երկրի ժողովրդական տնտեսության հետպատերազմյան վերականգնման և զարգացման համար փոխարինաբար հատկացրել են ավելի քան 100 միլիարդ ռուբլի, որը խոշոր ավանդ հանդիսացավ հետպատերազմյան ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ և բարձր ցուցանիշներով կատարելու գործում:

Սովետական պետությանը փոխարինաբար տրվող գումարների այս անդադար աճը հետևանք է մեր երկրի ժողովրդական

եկամուտի, աշխատավորության նյութական
բարեկեցության, բանվորների ու ծառայող-
ների աշխատավարձի և կոլտնտեսականների
եկամուտների աննախընթաց բարձրացման։
ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության ե-
կամուտների անդադար աճը, մեր աշխատա-
վորության նյութական բարեկեցության սիս-
տեմատիկ բարձրացումը և նրանց վառ
հայրենասիրությունը ամուր բազա են հան-
դիսանում սովետական պետության փոխա-
ռությունների հետագա զարգացման համար։
Ի տարբերություն կապիտալիստական եր-
կըրների փոխառություններից, որոնք ծանր
բեռ են աշխատավորների համար, սովետա-
կան փոխառությունները իսկական ժողո-
վըրդական փոխառություններ են, որոնք
ամբողջությամբ ծառայում են մեր երկրի
տնտեսական հզորացման, ժողովրդի նյու-
թական բարեկեցության հետագա աճման,
կոմունիզմի հոյակապ շենքի կառուցման
գործին։
Սովետական փոխառությունները շատ
հաջող կերպով զուգակցում են պետության
և բաժնեգրվողների շահերը, նրանց բերելով
զգալի եկամուտներ։ Մեր երկրի աշխատա-
վորները պետական փոխառությունների
խաղարկություններից մինչև հիմա շահել են



ավելի քան 31 միլիարդ ռուբլի, որից 3 ու
կես միլիարդ ռուբլի միայն 1950 թ. ըն-
թացքում։ Իսկ այս տարի փոխառություննե-
րի շահումներից մեր երկրի աշխատավոր-
ները կստանան 5 միլիարդ ռուբլի եկամուտ։

Պետական փոխառությունների բաժնեգրր-
մանը ակտիվ մասնակցություն են ունեցել
նաև մեր ռեսպուբլիկայի աշխատավորները,
որոնք մինչև Հայրենական Մեծ պատերազ-
մը հարազատ պետությանը փոխ են տվել
200 միլիոն ռուբլի, Հայրենական պատե-
րազմի տարիներին՝ 790 միլիոն ռուբլի և
վերջին 5 տարիների ընթացքում՝ 825 մի-
լիոն ռուբլի։

Այս Սովետական Հայաստանի աշխատա-
վորների ջերմ հայրենասիրության, նրանց
անշեղ կերպով աճող կենսամակարդակի մի
վառ վկայություն է, ռեսպուբլիկայի ժողո-
վըրդական տնտեսության հզոր վերելքի փայ-
լուն ապացույց։

Հայաստանի աշխատավորները փոխառու-
թյունների խաղարկությունից շահել են 145
միլիոն ռուբլի, այդ թվում 1949 թվականին՝
18 միլիոն, 1950 թվականին՝ 24 միլիոն ռուբ-
լի։

Մեր երկիրը թևակոխել է զարգացման նոր
շրջան՝ սոցիալիզմից աստիճանաբար կոմու-

նիզմին անցնելու շրջանը. Նա անմիջականորեն ձեռնամուխ է եղել կոմունիզմի նյութական-տեխնիկական բազայի ստեղծման աշխատանքներին—կոմունիզմի հոյակապ կառուցումների՝ Կույբիշևյան, Ստալինգրադյան, Կախովկայի հիդրոէլեկտրակայանների, Գլխավոր Թուրքմենական, Հարավ-Ուկրաինական և Հյուսիս-Ղրիմյան ջրանցքների, ինչպես նաև Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի կառուցման, բնության վերափոխման ստալինյան պլանի և այլ հոյակապ շինարարությունների իրականացմանը։

Այս պատվավոր գործում ևս մեր պետական փոխառությունները կխաղան իրենց խոշոր դերը, մեկ անգամ ևս ցուցաբերելով սովետական հասարակակարգի կենսունակությունը և անսահման առավելությունները կապիտալիստականի նկատմամբ։

Խ. ՍԱՐԳՍՅԱՆ





## ՄԻԱՎՈՐՎԱԾ ԱԶԳԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԾԱՌԱՅՈՒՄ Է ԱՄԵՐԻԿՅԱՆ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻՆ

1951 թվականի փետրվարի 17-ին սովետական մամուլը հրապարակեց ընկեր Ստալինի զրույցը «Պրավդա»-ի թղթակցի հետ։ Արտաքին քաղաքական բնույթի մի շարք հարցերի մասին ընկեր Ստալինի տված հստակ պատասխանները հսկայական նշանակություն ունեն ժամանակակից բարդ և լարված միջազգային իրադրությունը հասկանալու համար։ Չինական ժողովրդական ռեսպուբլիկան ագրեսոր հայտարարելու վերաբերյալ ՄԱԿ-ի ընդունած որոշման կապակցությամբ, ընկեր Ստալինը իր պատասխաններում անդրադառնում է այն դերին, որ կատարում է ներկայումս Միավորված Ազգերի Կազմակերպությունը։

Չինաստանը ագրեսոր հայտարարելու վերաբերյալ ՄԱԿ-ի այդ որոշումը ընկեր Ստալինը գնահատում է իբրև խայտառակ որոշում։ Ընկեր Ստալինը մատնանշում է, որ «հարկավոր է կորցնել խղճի վերջին մնացորդները՝ պնդելու համար, որ Ամերիկայի Միացյալ Նահանգները, որոնք զավթել են չինական տերիտո-

բիան՝ Տայվան կղզին, և ներխուժել են Կորեան՝ դեպի Չինաստանի սահմանները,— հանդիսանում են պաշտ-պանվող կողմ, իսկ Չինական Ժողովրդական Ռեսպուբ-լիկան, որը պաշտպանում է իր սահմանները և ջա-նում է իրեն վերադարձնել ամերիկացիների կողմից զավթված Տայվան կղզին, հանդիսանում է ագրեսոր։

Հիրավի, ամբողջ աշխարհին հայտնի է, որ Ամերի-կայի Միացյալ Նահանգներն իրենց զորքերն ուղար-կել են Կորեա և ագրեսիվ պատերազմ են մղում կո-րեական ժողովրդի դեմ, բնաջնջելով խաղաղ բնակ-չությանը, ավերելով կորեական քաղաքներն ու գյու-ղերը. ամերիկյան ավիացիան բանդիտական հարձա-կումներ է գործում չինական բնակավայրերի վրա, ամերիկյան նավատորմը գտնվում է չինական ջրերում, ամերիկացիները օկուպացրել են Տայվան կղզին, որը Չինաստանի տերիտորիայի մի մասն է։ Սակայն, Միավորված Ազգերի Կազմակերպությունը ոչ միայն չդատապարտեց ամերիկյան իմպերիալիստների այդ զավթողական գործողությունները, այլև սանկցիա տը-վեց դրանց, դրանով իսկ հնարավորություն տալով ա-մերիկյան ագրեսորներին քողարկվելու ՄԱԿ-ի դրոշա-կով։ Այսպիսով, Միավորված Ազգերի Կազմակերպու-թյունը, որի գլխավոր խնդիրն է հանդիսանում խա-ղաղության և ժողովուրդների անվտանգության պա-հպանումը, փաստորեն հովանավորում է ամերիկյան իմ-պերիալիստների ագրեսիան, դառնալով ամերիկյան ագրեսիվ քաղաքականության գործիք։ «Միավորված



Ազգերի Կազմակերպությունը,— նշում է ընկեր Ստալինը — որը ստեղծվել է որպես խաղաղության պահպան-ման պատվար, վերածվում է պատերազմի գործիքի, նոր համաշխարհային պատերազմի հրահրման միջոցի։

Ընկեր Ստալինը նշում է, որ այդ բանը տեղի ու-նեցավ այն պատճառով, որ ՄԱԿ-ում այժմ տեր ու տնօրեն է հանդիսանում ագրեսիվ պետությունների բլոկը՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների գլխավո-րությամբ, որտեղ նա ունի ձայների մեծամասնություն։ Այս կապակցությամբ ընկեր Ստալինը «Պրավդա»-ի թղթակցի հետ ունեցած զրույցում ասում է.

«ՄԱԿ-ի ագրեսորական կորիզը հանդիսանում են ագրեսիվ Հյուսիս-ատլանտյան պակտի անդամ տասը երկրները (ԱՄՆ-ը, Անգլիան, Ֆրանսիան, Կանադան, Բելգիան, Հոլանդիան, Լյուքսեմբուրգը, Դանիան, Նոր-վեգիան, Իսլանդիան) և լատինա-ամերիկյան քսան եր-կրներ (Արգենտինան, Բրազիլիան, Բոլիվիան, Չիլին, Կոլումբիան, Կոստա-Ռիկան, Կուբան, Դոմինիկյան ռեսպուբլիկան, Էկվադորը, Սալվադորը, Գվատեմա-լան, Հաիթին, Գոնդուրասը, Մեքսիկան, Նիկարա-գուան, Պանաման, Պարագվայը, Պերուն, Ուրուգվայը, Վենեսուելան)։ Այժմ այդ երկրների ներկայացուցիչ-ներն էլ հենց ՄԱԿ-ում որոշում են պատերազմի և խաղաղության բախտը։ Այդ նրանք ՄԱԿ-ում անցկաց-րեցին Չինական ժողովրդական ռեսպուբլիկայի ագ-րեսիվության վերաբերյալ խայտառակ որոշումը»։

ՄԱԿ-ի այդ ագրեսիվ կորիզի շուրջն են խմբավոր-

վում և այլ կապիտալիստական պետություններ, որոնց ռեակցիոն կառավարությունները, դավաճանելով իրենց ժողովրդի շահերին, դարձել են Ուոլ-Ստրիտի մոնոպոլիստների գործակալները։ Այդ պետությունների թվին կարելի է դասել Թյուրքիան, Հունաստանը և մի քանի այլ երկրներ։

Անգլիայի, Ֆրանսիայի, Բելգիայի, Հոլանդիայի և Հյուսիս-Ատլանտյան ագրեսիվ բլոկի կազմի մեջ մտնող մյուս պետությունների կառավարող շրջանները վաղուց արդեն ծառայության մեջ են մտել ամերիկյան իմպերիալիստների մոտ, օգնելով նրանց Մարշալի պլանով ստրկացնելու իրենց երկրները։ Այդ պատճառով էլ այդ երկրների կառավարող շրջանները ՄԱԿ-ում կուրորեն հետևում են ամերիկյան իմպերիալիստների թելադրանքներին, վարելով նոր պատերազմի հրահրմանը նպաստող քաղաքականություն։

Ինչ վերաբերում է Միավորված Ազգերի Կազմակերպությունում լատինա-ամերիկյան երկրների դերին, ապա, ինչպես ասում է ընկեր Ստալինը, «ոչ ոքի համար գաղտնիք չի հանդիսանում այն փաստը, որ քսան լատինա-ամերիկյան երկրների 20 ներկայացուցիչներն այժմ ներկայացնում են Ամերիկայի Միացյալ Նահանգների առավել համախմբված և հլու հնազանդ բանակը ՄԱԿ-ում»։

Ընդորում պետք է նշել լատինա-ամերիկյան երկրների առանձնահատուկ կախումը ԱՄՆ-ից։ Վաղուց ի վեր լատինա-ամերիկյան երկրները գաղութա-



յին շահագործման օբյեկտ են եղել հյուսիս-ամերիկյան իմպերիալիստների համար։ Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ ամերիկյան իմպերիալիզմն իր դիրքերն ավելի ամրացրեց լատինական Ամերիկայի երկրներում։ Պատերազմի տարիներին Լատինական Ամերիկայի որոշ երկրներում ԱՄՆ-ի մոնոպոլիստական շրջանների միջոցներով կառուցվեցին զանազան ձեռնարկություններ, որոնք էլ ավելի ուժեղացրին այդ երկրների տնտեսական կախվածությունը ԱՄՆ-ից։

Լատինա-ամերիկյան զանազան երկրներում տնօրինություն են անում ամերիկյան տրեստները, որոնք իրենց տիրապետությանն են ենթարկել լատինա-ամերիկյան մի շարք երկրների ամբողջ տնտեսական ու քաղաքական կյանքը։ Այսպես, Վենեսուելայում և Պերույում լիակատար տեր ու տնօրեն է հանդիսանում «Ստանդարտ օյլ» կոնցեռնը և նրա ձեռնարկությունները։ Կենտրոնական Ամերիկայի երկրներում (Գվատեմալայում, Գոնդուրասում, Նիկարագուայում, Սալվադորում, Կոստա-Ռիկայում, Պանամայում) ամբողջ իշխանությունը փաստորեն կենտրոնացված է հյուսիս-ամերիկյան՝ «Յունայտեդ ֆրուտ» ընկերության ձեռքում, Դոմինիկյան ռեսպուբլիկայում տիրապետություն են հաստատել հյուսիս-ամերիկյան շաքարի, ծխախոտի և զանազան այլ ընկերություններ, որոնք փաստորեն ստրկացրել են այդ երկրները։ Նույնիսկ Բրազիլիայի, Արգենտինայի, Մեքսիկայի նման խոշոր լատինա-ամերիկյան երկրներում տնտեսությու-

նը մեծ չափով ենթարկված է հյուսիս-ամերիկյան կապիտալի վերահսկողությանը։

Լատինա-ամերիկյան երկրների տնտեսական ստրկացումից բացի, հյուսիս-ամերիկյան իմպերիալիզմն այդ երկրները խճճել է զանազան համաձայնագրերի ցանցում, որոնք «միջամերիկյան համագործակցության» քողի տակ հյուսիս-ամերիկյան մոնոպոլիաների շահերին են ենթարկում լատինա-ամերիկյան երկրների ամբողջ քաղաքականությունը։

Պատերազմի ժամանակ Ամերիկայի Միացյալ Նահանգները Լատինական Ամերիկայի զանազան երկրներում ստեղծեցին 92 ռազմա-ծովային և ռազմա-օդային բազաներ, որոնց մեծ մասը նրանք այժմ էլ պահում են իրենց ձեռքում։ Արևմտյան կիսագնդի «պաշտպանությունը» կազմակերպելու պատրվակով, ամերիկյան իմպերիալիստները իրենց վերահսկողության տակ են վերցնում լատինա-ամերիկյան երկրների բանակները և բոլոր ստրատեգիական ռեսուրսները։ 1948 թվականին Բոգոտում (Կոլումբիա) տեղի ունեցած պանամերիկյան հերթական կոնֆերանսում ընդունվեց «Ամերիկյան պետությունների կազմակերպության» Կանոնադրությունը, որով լատինա-ամերիկյան պետությունները միավորվում են մի ռազմա-քաղաքական բլոկի մեջ՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների գլխավորությամբ։ Լատինա-ամերիկյան երկրների այս բացառիկ մեծ կախվածությունը Ամերիկայի Միացյալ Նահանգներից հանգեցրեց նրան, որ այդ



երկրների դելեգատները ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեի սեսիաներում անվերապահորեն հետևում են ԱՄՆ-ին միջազգային համագործակցության և Միավորված Ազգերի Կազմակերպության կանոնադրության բուն իսկ հիմքերի դեմ սկսած նրանց արշավանքում։ Այսպիսով, լատինա-ամերիկյան 20 պետություններ, որոնք կազմում են ՄԱԿ-ի բոլոր անդամների մեկերրորդը, հանդիսանում են կարևոր օղակը այն տխրահռչակ «քվեարկության մեքենայի», որը ՄԱԿ-ում հլու-հնազանդորեն հաստատում է ամերիկյան իմպերիալիստների բոլոր առաջարկները։ Նման դրությունը նշանակում է, որ ՄԱԿ-ը, վերածվելով ագրեսիվ պատերազմի գործիքի, դրա հետ միասին, դադարում է «իրավահավասար ազգերի միջազգային կազմակերպություն» լինելուց։ Ինչպես ասում է ընկեր Ստալինը, «Ըստ էության ՄԱԿ-ը այժմ հանդիսանում է ոչ այնքան համաշխարհային կազմակերպություն, որքան կազմակերպություն ամերիկացիների համար, որը գործում է հօգուտ ամերիկյան ագրեսորների»։

Լատինական Ամերիկայի զանազան երկրներում իշխանության գլուխ կանգնած ռեակցիոն կլիկները, օգնելով ամերիկյան իմպերիալիստներին՝ ստրկացնելու իրենց ժողովուրդներին, իրենք նույնպես հարստանում են այդ գործում։ Այդ պատճառով էլ, ինչպես նշում է ընկեր Ստալինը, «Նոր պատերազմի հրահրմանը ձգտում են ոչ միայն Ամերիկայի Միացյալ Նահանգներ-

րը ու Կանադան, այլ այդ ուղու վրա են կանգնած նաև լատինա-ամերիկյան քսան երկրները, որոնց կալվածատերերը և վաճառականները ծարավի են նոր պատերազմի՝ որևէ տեղ Եվրոպայում կամ Ասիայում, որպեսզի պատերազմող երկրներին ապրանքներ վաճառեն գերբարձր գներով և միլիոններ դիզեն այդ արյունոտ գործում»։ ՄԱԿ-ում ամերիկյան բլոկի շանտաժի և բռնության գործելակերպը հանգեցնում է նրան, որ անտեսվում են ՄԱԿ-ի անդամ շատ պետությունների շահերը։ Ընկեր Ստալինն այս կապակցությամբ նշում է. «ՄԱԿ-ում տիրող այժմյան կարգերի համար բնորոշ է, օրինակ, որ Ամերիկայում ոչ մեծ Դոմինիկյան ռեսպուբլիկան, որտեղ հազիվ երկու միլիոն բնակչություն կա, այժմ նույնպիսի կշիռ ունի ՄԱԿ-ում, ինչպես Հնդկաստանը, և շատ ավելի մեծ կշիռ, քան Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, որը զրկված է ՄԱԿ-ում ձայնի իրավունքից»։

Այս կշիռը, որով օգտվում է փոքրիկ Դոմինիկյան ռեսպուբլիկան, նրանով չի բացատրվում, իհարկե, թե ՄԱԿ-ում տոն տվող ամերիկյան իմպերիալիստները հաշվի են առնում դոմինիկյան ժողովրդի շահերը։ Ընդհակառակը, Դոմինիկյան ռեսպուբլիկայի ժողովուրդը գտնվում է ամերիկյան մոնոպոլիստների և տեղական կալվածատերերի ու վաճառականների կրկնակի անողոք ճնշման տակ։ Իսկ դոմինիկյան ներկայացուցիչները ՄԱԿ-ում կշիռ ունեն այն պատճառով, որ մոլեռանդորեն պաշտպանում են հյուսիս-ամերիկ-



յան իմպերիալիստների ամեն մի ագրեսիվ առաջարկություն։

Ամերիկյան տիրապետությունը այժմ բնորոշ է ՄԱԿ-ի բոլոր օրգանների համար, և մասնավորապես ՄԱԿ-ի քարտուղարության համար։ Բավական է ասել, որ ՄԱԿ-ի քարտուղարության 4 հազար աշխատակիցներից ավելի քան երեք հազարը, այսինքն՝ երեք քառորդը, ամերիկյան քաղաքացիներ են։ Ճիշտ է, ՄԱԿ-ի գլխավոր քարտուղար Տրյուգվե Լին ձևականորեն նորվեգացի է, բայց փաստորեն իրեն զգում է որպես ամերիկացիների ծառա։

ՄԱԿ-ի քարտուղարության բոլոր գործերը վճռում են ամերիկացիներ Կորդեն, Պրայսը, Ֆելլը և մյուսները, որոնք ՄԱԿ-ի քարտուղարությունը դարձրել են ամերիկյան պետական դեպարտամենտի մի գրասենյակ։ Պարզ է, որ Միավորված Ազգերի Կազմակերպությունը այս պայմաններում չի կարող լինել խաղաղության պահպանման պատվար, որովհետև նրանում տիրապետում է Ամերիկայի և մարշալլականացված Արևմտյան Եվրոպայի կապիտալիստական պետությունների բլոկը, որ ծառայում է Ամերիկայի Միացյալ Նահանգների իմպերիալիստներին։

Ինչպես նշում է ընկեր Ստալինը, «Միավորված Ազգերի Կազմակերպությունը, այսպիսով, կանգնում է Ազգերի Լիգայի անփառունակ ուղու վրա։ Դրանով իսկ նա թաղում է իր բարոյական հեղինակությունը և իրեն մատնում է քայքայման»։

Ընկեր Ստալինն ասում է, որ իմպերիալիստները, ձգտելով հրահրել համաշխարհային նոր պատերազմ, միևնույն ժամանակ վախենում են իրենց ժողովուրդներից, որոնք խաղաղության կողմն են։

Այդ պատճառով էլ իմպերիալիստները հալածում են խաղաղության պաշտպաններին, այդ պատճառով էլ նրանք ՄԱԿ-ում տապալեցին խաղաղության Պակտ կնքելու, սպառազինությունները կրճատելու, ատոմային զենքն արգելելու վերաբերյալ սովետական առաջարկները։

Այս պայմաններում, երբ ՄԱԿ-ը գործիք է դառնում ամերիկյան ագրեսորների ձեռքին, «խաղաղությունը կպահպանվի և կամրապնդվի,— ասում է ընկեր Ստալինը,— եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և այն պաշտպանեն մինչև վերջ»։

«Ուստի խաղաղության պահպանման համար լայն կամպանիան, որպես պատերազմի հրձիգների հանցավոր մեքենայությունների մերկացման միջոց, այժմ առաջնակարգ նշանակություն ունի»,— նշում է ընկեր Ստալինը։

Պրոգրեսիվ մարդկության մեծ առաջնորդ ընկեր Ստալինի այս խոսքերը բոլոր երկրներում միլիոնավոր մարդկանց ոգեշնչեցին ուժեղացնելու խաղաղության համար մղվող հերոսական պայքարը։ Ամբողջ աշխարհի հասարակ մարդկանց համար ավելի պարզ



դարձավ, որ խաղաղության գործը գտնվում է իրենց սեփական ձեռքերում։

Փետրվարի վերջերին Բեռլինում տեղի ունեցած խաղաղության Համաշխարհային Խորհրդի սեսիան, արտահայտելով ամբողջ պրոգրեսիվ մարդկության կամքը, ընդունեց մի Դիմում, պահանջելով խաղաղության Պակտ կնքել հինգ մեծ տերությունների՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների, Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Մեծ Բրիտանիայի և Ֆրանսիայի միջև։ Շատ երկրներում հաջողությամբ սկսվեց ստորագրությունների հավաքումը այդ Դիմումի տակ։ Աշխատավորները իրենց ստորագրությունները դնում են այդ Դիմումի տակ, որովհետև հասկանում են, որ իրենց վճռական գործողություններով միայն նրանք կկարողանան սանձահարել պատերազմի հրձիգներին։ Ուստի, բոլոր հիմքերը կան ենթադրելու, որ ստորագրությունների հավաքումը խաղաղության Պակտ կնքելու Դիմումի տակ՝ կվերածվի միջազգային վիթխարի կամպանիայի, միջազգային հսկայական հանրաքվեի, որը կցուցադրի ժողովրդական մասսաների ուժն ու հզորությունը, որոնք հաստատակամորեն որոշել են իրենց ձեռքը վերցնել խաղաղության գործը և թույլ չտալ իմպերիալիստներին նոր արյունալի սպանդ սարքել։

Իր զրույցի վերջում ընկեր Ստալինը ընդգծում է, որ Սովետական Միությունը շարունակում է անսասա-

*նորեն կվարի պատերազմը կանխելու և խաղաղությունը պահպանելու քաղաքականությունը։*

*Սովետական Միության այդ խաղաղասիրական քաղաքականության մի նոր արտահայտություն է հանդիսանում 1951 թվականի մարտի 12-ին ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընդունած Օրենքը խաղաղության պաշտպանության մասին, որը դատապարտում է պատերազմի պրոպագանդան, որպես ամենածանր հանցագործություն։*

*Խաղաղ ստեղծագործ աշխատանքով զբաղված սովետական ժողովուրդը, խաղաղության մեծ դրոշակակիր ընկեր Ստալինի գլխավորությամբ, վստահորեն ընթանում է խաղաղության կողմնակիցների հավանգարդում, գլխավորելով ամբողջ դեմոկրատական լագերը, որի մեջ միավորված են հարյուր միլիոնավոր մարդիկ։ Այդ հզոր լագերը կվիժեցնի մի բուռ իմպերիալիստների բոլոր հանցավոր դիտավորությունները։ Խաղաղությունը կհաղթանակի։*

*Լ. ՄԱՆԱՍԱՐՅԱՆ*





# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ՍՍՌՄ 1951 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

*1. ՍՍՌՄ 1951 թվականի Պետական բյուջեի կատարման արդյունքները վառ կերպով ցույց են տալիս սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի վերելքը ՍՍՌՄ-ում։*

*2. ՍՍՌՄ 1951 թվականի պետական բյուջեն հանդիսանում է ժողովրդական տնտեսության հետագա զարգացման և աշխատավորության նյութական բարեկեցության վերելքի հիմքը։*

*3. Սովետական պետության 1951 թ. բյուջեի եկամուտների առաջացման աղբյուրները և պայմանները։*

*4. Սովետական պետության միջոցների խնայողության համար ծավալված ամենօրյա պայքարը՝ Պետական բյուջեի կատարման կարևորագույն պայմանն է հանդիսանում։*

*5. Սոցիալիստական պետության 1951 թ. բյուջեն հանդիսանում է ՍՍՌՄ բոլոր ազգությունների ժողովրդական տնտեսության, գիտության, կուլտուրայի զարգացման վառ ապացույցը։*

6. 1951 թ. Հայկական ՍՍՌ պետական բյուջեն լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության վառ դրսևորումն է մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության, կուլտուրայի ծաղկման, աշխատավոր-ների բարեկեցության անշեղ աճման նկատմամբ։

7. ՍՍՌՄ Պետական բյուջեն Սովետական երկրի խաղաղ-ստեղծագործական աշխատանքի արտացոլումն է, ի հակադրություն իմպերիալիստական երկրների հա-կաժողովրդական, ռազմական ագրեսիվ բյուջեների։

8. Պայքարը 1951 թ. պետական պլանների կատար-ման համար մեր երկրի բոլոր աշխատավորների հայ-րենասիրական պարտքն է։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ 1951 թվականի Պետական բյուջեի մասին ՍՍՌՄ ֆինանսների մինիստր Ա. Գ. Զվերևի զեկուցու-մը: «Ս. Հ.», 1951 թ. մարտի 9-ի համարը։

Օրենք՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա-ների Միության 1951 թվականի Պետական բյուջեի մասին: «Ս. Հ.», 1951 թ. մարտի 14։

Հայկական ՍՍՌ 1951 թվականի պետական բյուջեի և 1950 թվականի պետական բյուջեի կատարման մա-սին: (Հայկական ՍՍՌ ֆինանսների մինիստր Ա. Շե-կոյանի զեկուցումը): «Ս. Հ.», 1951 թ. մարտի 31։

Օրենք՝ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի 1951 թվականի պետական բյուջեի մասին: «Ս. Հ.», 1951 թ. ապրիլի 4։



## II

## ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՇԱՐԺՄԱՆ ՎԵՐԵԼՔԸ

1. ՍՍՌՄ ղեկավար դերը բոլոր դեմոկրատական ազգերի պայքարում՝ հանուն կայուն խաղաղության և անվտանգության, հանուն ժողովուրդների խաղաղ համագործակցության։

2. Անգլո-ամերիկյան իմպերիալիզմի կողմից գլխավորած հակադեմոկրատական լագերի նպատակն է՝ համաշխարհային տիրապետության և ագրեսիայի նախապատրաստումը ուղղված ՍՍՌՄ և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ։

3. Խաղաղության համար մղվող պայքարի նոր հաջողությունները՝ Խաղաղության Կողմնակիցների համաշխարհային Խորհրդի որոշումների կենսագործման արդյունքն է։

4. Համաշխարհային հզոր շարժումը խաղաղության օգտին՝ մի նոր հուժկու հարված է ուղղված անգլո-ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ պլանների դեմ։

5. Խաղաղության համաշխարհային Խորհրդի որոշումները նոր ավանդ են կայուն խաղաղության ամրապնդման և նոր պատերազմի հրձիգների ագրեսիվ պլանների ձախողման ասպարեզում։

6. Խաղաղության կողմնակիցների շարժման մեջ ընդգրկության նոր միլիոնավոր խավերի և կազմակերպությունների ներգրավումը խաղաղության համար մարտնչողների սրբազան պարտականությունն է։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ընկեր Ի. Վ. Ստալինի զրույցը «Պրավդա»-ի թղթակցի հետ: *«Սովետական Հայաստանի»-ի 1951 թ. փետրվարի 17-ի համարում:*

Օրենք՝ խաղաղության պաշտպանության մասին: *«Սովետական Հայաստանի»-ի 1951 թ. մարտի 14-ի համարում:*

Խաղաղության միլիոնավոր կողմնակիցների ձայնը: *«Պրավդա»-ի 1951 թ. մարտի 3-ի առաջնորդողը— տպագրված «Սովետական Հայաստանի»-ի 1951 թ. մարտի 4-ի համարում:*

Խաղաղության համաշխարհային խորհրդի սեսիան: Բանաձև կազմակերպական հարցերի և խաղաղության շարժումը ընդլայնելու մասին: *«Սովետական Հայաստան»-ի 1951 թ. մարտի 4-ի համարում:*

Խաղաղության համաշխարհային խորհրդի դիմումը: «Պրավդա»-ի փետրվարի 27-ի առաջնորդողը: *Տպագրված «Սովետական Հայաստանի»-ի 1951 թ. փետրվարի 28-ի համարում:*

III

## 1951 ԹՎԱԿԱՆԻ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ ԱՆՑԿԱՑՆԵՆՔ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾ ԵՎ ՈՐԱԿՈՎ

*1. Գարնանային դաշտային աշխատանքների ժամանակին և կազմակերպված անցկացումը— գյուղատնտեսության աշխատողների մարտական խնդիրն է:*



*2. Կոլխոզների, ՄՏԿ-ների և սովխոզների նյութատեխնիկական և աշխատանքային ռեսուրսների լրիվ ու ճիշտ օգտագործումը, գիտության նվաճումների և առաջավոր փորձի լայն արմատավորումը— գարնանային դաշտային աշխատանքների հաջող անցկացման և բարձր բերք ստանալու երաշխիքն է:*

*3. Բարձր արտադրողականությամբ աշխատելը, աշխատանքային դիսցիպլինայի խստորեն պահպանումը, սահմանված աշխատանքային նորմաների ամենօրյա կատարումն ու գերակատարումը— յուրաքանչյուր կոլտնտեսականի հայրենասիրական պարտքն է:*

*4. Գարնանացանը օրինակելի կերպով անցկացնելու համար լայնորեն ծավալենք սոցիալիստական մրցությունը:*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ընկ. Գր. Հարությունյանի հաշվետու զեկուցումը Հայաստանի Կ(բ)Պ XV համագումարում, ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *«Ագիտատորի բլոկնոտ» 1951 թ. № 6, էջ 55—107:*

Բարձրացնել տրակտորների և գյուղատնտեսական բոլոր մեքենաների արտադրողականությունը: *«Սովետական Հայաստանի» 1951 թվի մարտի 25-ի առաջնորդողը:*

1951 թվականը դարձնել բարձր բերքատվության տարի: *«Սովետական Հայաստան»-ի 1951 թ. ապրիլի 10-ի առաջնորդողը:*

## IV

## ԿՈԼԽՈԶԱՅԻՆ ՈՒ ՍՈՎԽՈԶԱՅԻՆ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ— ՏՆՏԵՍԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԽՆԴԻՐ Է

*1. Ինչպե՞ս է կատարվում մեր կոլխոզում և սովխոզում անասնաբուծության զարգացման եռամյա պլանը։*

*2. Կերի ճիշտ նորմավորման խիստ հաշվառումն ու հսկողությունը, անասունների հոգատար կերակրումը— անասունների մթերատվության բարձրացման առաջին պայմանն է։*

*3. Կերի հաստատուն բազայի ստեղծումը— անասնաբուծության հետագա զարգացման և մթերատվության բարձրացման հիմքն է։*

*4. Խոշոր և մանրաշ անասունների գլխաքանակի լրիվին պահպանումը անասնաբուծների ուղղակի պարտականությունն է։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ընկ. Գր. Հարությունյանի հաշվետու զեկուցումը Հայաստանի Կ(բ)Պ 15-րդ համագումարում ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին։ *«Ագիտատորի բլոկնոտ» 1951 թ. № 6, էջ 55—107։*

Ավելի մեծ ուշադրություն անասնաբուծության զարգացմանը։ *Սովետական Հայաստան»-ի 1951 թ. ապրիլի 4-ի առաջնորդողը։*



## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՎԱՍԻԼԻ ԱԺԱԵՎ.— Մոսկվայից հեռու։ *836 էջ, գինը 21 ռ. 75 կոպ.։*

Վ. ԿԵՍՏԼԻՆՍԿԱՅԱ.— Պաշարման մեջ։ *836 էջ, գինը 20 ռ. 85 կոպ.։*

ԲԱԴՐԱՏ ՍՏԱՖՖԻ.— *Փորձություն։ 344 էջ, գինը 9 ռ. 45 կոպ.։*

Ե. ԿՈՇԵՎԱՅԱ.— Պատմվածք որդուս մասին։ *226 էջ, գինը 4 ռ. 90 կոպ.։*

Վ. ԿԱՎԵՐԻՆ.— Արիության դպրոցը։ *117 էջ, գինը 3 ռ. 40 կոպ.։*

Ն. ԺԴԱՆՈՎ.— Ծովային աղը։ *144 էջ, գինը 3 ռ. 35 կոպ.։*

ՆԻԿՈԼԱՅ ԳՐԻԲԱՉԵՎ.— Գարունը «Պոբեդա»-յում։ *57 էջ, գինը 1 ռ. 80 կոպ.։*

ԱՆ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ.— Դաշտապաշտպան անտառաշերտերի ստեղծումը բնացան եղանակով։ *49 էջ, գինը 80 կոպ.։*



Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

БЛОКНОТ АГИТАТОРА

№ 7 1951 г.

ՎՖ 01401 Պատվեր № 320 Տիրաժ 10.000

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան։
Երևան